# ԹԷՈՓՐԱՍՏՈՍԻ

## ՆԿԱՐԱԳԻՐՔ

ԹԱՐԳՄԱՆԵԱՑ

Հ. ԱՐՍԷՆ ԿՈՄԻՏԱՍ

ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

'Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ



'Ի ՎԵՆԵՏԻԿ

'Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

1830

# ԱԶԴ

Թէոփրաստոս՝ յերես քա-
ղաքէ Լեսբոս կղզւոյ, աշակերտ
էր Պղատոնի և Արիստոտէլի,
և վարժապետ Մենանդրի. Բա-
զում գիրս բնախօսեաց զարա-
րածոց, այլ սակաւք կան առ-
մեզ: 'Ի խրատականացն Նկա-
րագիրքս մի է յընտիր գրոց
նախնեացն, որ հակառականն՝
ախտիցն նկարուք՝ յորդորէ ըզ-
մարդիկ 'ի լաւութիւն, և յա-

մենայն ժամանակի և առ ամե֊
նայն ազգս օգտակար գտանի . վասն որոյ և ոսկեղէնիկ անուն ժառանգեաց :

Հելլէն ընագիրն բազում ու֊րեք յաղաւաղեալ գրչաց մնայր ունի . է ուրեք ուր զնոյն բանս նովին բառիւք կրկնագրէ , է զի թերի զիմաստսն թողու, և այլ երբեմն նկարագիր ընդ նկարա֊գրի թուի խառնեալ : Մեք թարգմանեցաք որպէս և գը֊տաք զսա ձուլագրոշմ տպա֊րեալ 'ի Լիպսիա , 'ի կարի կա֊րեւորսն եւեթ ծանօթս ինչ կար֊ճառօտս տուեալ ընթերցողաց:

Կամէաք համառօտել և ըզ֊վարս իմաստասիրիս , եթէ

տուղապարտում դրեցեալքն Թուէին. այլ ստոյգ վարք դրաւորական արանց՝ մատեանքն նոցա են ։ Անմոռաց յիշատակաց արժանի 'ի սորա վարս այն է, զի այր իմաստասէր՝ որ առէալըն քարոզէր, Թէ Չիք կորուստ չար քան զժամանակին, նոյն ինքն անցեալ զհարիւրամենիւք և 'ի վախճանել եկեալ՝ ասաց. Զիղջ է ինձ մեռանել՝ դեռ այն ինչ սկսեալ լինել իմաստուն ։

# ԹԷՈՓՐԱՍՏՈՍԻ

## ՆԿԱՐԱԳԻՐՔ ԲԱՐՈՒՑ



Թէոփրաստ առ Պողիկլէս ։

ԲԱԶՈՒՄ անգամ ածեալ զմտաւ յառաջագոյն զարմացեալ եմ և թերևս ոչ դադարեցայց՝ ի զարմանալոյ, թէ քանզի նոյն մի օդք են աշխարհիս Ելլադայ և ամենայն Հելլենք նովին օրինօք են դաստիարակեալ, զի՞ է զի ոչ ամենեքեան զնոյն կարգս վարուց բերեմք յանձին ։

Եւ զի ՚ի վաղ ժամանակաց

հայեցայ ես 'ի մարդկան բնութիւն՝ կեցեալ ամս իննսուն և ինն և ընդ բազում ազգի ազգի բարս եղեալ կենցաղակից, և հաւաստեաւ մանր զննեցի զբարիս 'ի մարդկանէ և զչարսն, արժան համարեցայ՝ ով Պոլիկլէս՝ զիւրաքանչիւր նոցա զկարգս կենաց ընդ գրով արկանել։ Արդ եդից քեզ առաջի ըստ ազգի զամենայն բարս նոցա * և զոճ վարուց ։

Այլ ունիմ, ով Պոլիկլէս, թէ որդեակք մեր 'ի լաւութիւն կրթեսցին՝ առ ձեռն ունելով յիշատակս այսոցիկ ․

* Իմա զչարացն միայն, զոր 'ի յետին տեղւոջն յիշատակէաց, և ոչ եթէ զիւրաքանչիւր զբարեացն և զչարաց, որպէս թուեցաւ երբեմն, և կարծիք եղեն թերի լինելոյ Գրոցս, զի ոչ բերէ և զառաքինեացն նկարագիրս ։

յորոց իբրեւ յօրինակաց այլըն-տիր լինիցին՝ ընդ պարկեշտա-գոյնսն վարել կենցաղ, զի մի՛ քան զնոսա ինչ յետնեալ գտա-նիցին :

Եւ արդ ես բան 'ի գործ ա-րարից . իսկ զհետ գալ և տե-սանել՝ եթէ արդար խօսիցիմ, այն քո է : Եւ թողեալ զերկայն նախաշաւիղ խօսից իրացս՝ բա-նիս սկիզբն առից յայնցանէ որ 'ի խորամանգութիւն հատեալ-քըն իցեն : Եւ անտի սկսեալ՝ նախ եդից զսահման նորա . ա-պա որպէս ինչ դք խորամանգն իցէ՝ զայն կարգեցից, և զինչ բարք նորա : Սոյնպէս և զայլ ամենայն ախտս, որպէս յան-ձին կալայ, ջանացայց կարգաւ մի ըստ միոջէ յանդիման առ-նել :

## Ա.

## ՎԱՍՆ ԽՈՐԱՄԱՆԳՈՒԹԵԱՆ

—

ՄԱՐԴ խորամանգութիւն ըստ իւրում նկարագրին թուի լինել կեղծիք բանից և գործոց տու. 'ի չարն ։ Եւ խորամանգ այն ոք է, որոյ առ թ[illegible]ան մատուցեալ՝ խօսել կամի ընդ նմա, որպէս այն թէ ոչ ինչ ամենևին ունիցի խէթ ընդ նմա. և յերեւս գովէ զնոսա, որոց 'ի թիկանց դաւաճան գործէր. ընդ ձեռս նոցա որոգա-

մի ընդ նոսա, և չարախօսացն իւրոց Թողութիւն շնորհէ։ Յաղագս անձին բամբասանաց և առ զրկեալս և առ զչարեալս հեզութեամբ խօսի։

Եւ որ ստիպաւ տեսանել ըղնա և խօսել ինչ կամիցին, պատուիրէ դառնալ անդրէն յայլում ժամու. և պատճառի՝ թէ այն ինչ եկեալ է, և թէ օրն տարաժամեալ է և ինքն տկար։

Եւ որ փոխ 'ի նմանէն խընդրիցեն և հանգանակ ժողովիցեն, Տուրևառ վաճառոց ոչ է, ասէ. և յորժամ ոչ ինչ վաճառիցէ, Համավաճառ՝ ասէ՝ բարուօք ընթանայ։ Թէ լսէ ինչ, չլսելոյն առնէ, և թէ տեսանէ՝ չհայելոյն։ Ոչ երբէք ասէ յայտ զոր գործէն, այլ թէ Խորհուրդ 'ի միտ ունիմ. և թէ խոստավան ինչ ուրեք լինիցի, Մոռացեալ եմ, ասէ։ Ի ինչ զոր՝

Տեսից, ասէ, է զոր՝ Չգիտեմ, և է ընդ որ Զարմանամ, և է ուրեք՝ զի Եւ ես ինքն զգոյն խորհիմ, ասէ ։

Միով բանիւ, Ճարտար է միշտ յայս ձեւս խօսից ։ Ի՛հ ոչ հաւատամ, ոչ կարծեմ, զարմանք է ։ և յաւելու Թէ Այլ յայլմէ եղեալ եմ ։ և Թէ Այդ ոչ պատմեցաւ ինձ, Նոր և չքնաղ իրք են առ իս ։ Եր՛Թ այլում ումեք ասա ։ քե՞զ արդեւք անհաւատացից՝ եԹէ Նմա եդից մեղ, ոչ գիտեմ, տարակոյս է ինձ ։

Այլ զգո՛յշ լեր, մի՛ վաղվաղակի հաւատասցես այսպիսի ձայնից և պատ 'ի պատ բանից և շատխօսուԹեանց, քան զոր չիք ինչ գտանել չար ։ 'Ի կեղծաւոր և 'ի նենգաժետ բարուց առաւել պարտ է զգուշանալ՝ քան յիժից ։

# Բ.

## ՎԱՍՆ ՍՈՒՏԱԿԱՊԱՇՏՈՒԹԵԱՆ

Սուտակապաշտութիւն համարելի է վարք անպատեհ 'ի շահ սուտակապաշտին, և սուտակապաշտ այն՝ որ ճանապարհակից ումեք եղեալ, ասիցէ. Առնուս 'ի միտ՝ թէ որպէս 'ի քեզ ակնկառոյց կան մարդիկդ. ոչ ումեք յորոց 'ի քաղաքիս են լինի այս՝ բաց 'ի քէն. երէկ գովեցար 'ի սրահին Ստոյիկեան.* զի իբրև արք աւելի քան զերեսուն ակմբեալ էին, և զրոյցք 'ի մէջ անկան՝ թէ ո՛ լաւագոյն իցէ, աստի սկսեալ ամենեքեան 'ի վեր և 'ի վայր

*Այս տեղի հասարակաց էր յառաջն, և ապա կարգեցաւ ժողովարան Ստոյիկեան իմաստասիրաց:

դքո անուն յեղյեղեցին ։ Եւ այլ ինչ այսպիսի տեսլով, տանաւ զգուշութեամբ 'ի հանդերձէ նորա զծիւն փոքրիկ ։ Եւ եթէ ունդ ինչ յարդի արկեալ իցէ հողմոյ 'ի վարսս գըլխոյն, ծայրիւք մատանցն խնամով 'ի բաց քաղէ, ժպտի և ասէ. Տեսանե՞մս, երկու օր է զի չեմ տեսեալ զքեզ, և ահա մօրուքդ ալևորեալ է. սակայն և այնպէս առ տիովք հասակիդ տակաւին ոչ ինչ ընդհատ յայլոց քաջալթուխ են հերքդ ։

Եւ 'ի խօսել նորա՝ տեսանէ այլոց լուռ լինել, և նմա լուռ 'ի լու գովէ զնա. և երբև դադարեցէ՝ ծափ զծափի հարկանէ, ձայն առնու՝ վկայէ թէ ամենաբարուոք խօսեցաւ ։ 'Ի կատակել նորա՝ ցուրտ ծաղր արձակէ, և զձորձան ընդ բերանն ունդէ, որպէս թէ ոչ կարացեալ ունել զծաղրն ։

Որ յուղւոջ ընդ առաջ պատահիցեն, պատառոտէր այս զատեղի ունել մինչև նա անցանիցէ . և զնեռալանանձ և խնձոր՝ բերէ այս որդւոց նորա ակնյանդիմանն նորին, և ողջագուրեալ ասէ, Բարւոյ հօր սիրուն ձագունք : Եւ յորժամ նա հողաթափս զնիցէ, զատմանն բարեձև քան զօձն ըննել ասէ : Եւ Թէ առ բարեկամ ոք ուրեք գնայցէ, յառաջեալ պատրաստամաւոր ընթանայ, Թէ Առ քեզ գայ . և անդրէն ընդ առաջ նորա դարձ արարեալ պատմէ, Թէ Ազդ արարի : Առանց ընդ բանս ինչ ածելոյ կարող է պաշտել անդանդաղ և զոր 'ի կանանցն շուկայի :*

'Ի սեղանակիցն լինել. յա-

* Կանանց շուկայ կոչէր յԱթէնս ուր վաճառէին անօթս երփի . ուստի կարծի թէ պարկէշտ ոճով ըղ-

ռաջ քան զամենայն ոք ինքն 'ի գովութիւն ատանոս զգինին . և թէ մերձ բազմեալ իցէ , Ո՛հ , ասէ , որպէս յուշիկ ուտես . և առեալ ինչ նմա 'ի սեղանոյն, Աղէ զայս առ, ասէ , քանզի համեղ է ։ Եւ հարցանէ թէ մնիցի՞, և խնդրիցէ՞ այլ ևս առ կանելիս . և զայս ասացեալ ծածկէ զնա վերարկուաւ . և կարկառեալ յունկն նորա շշըն-ջէ . և 'ի խօսելն ընդ այլս 'ի նա ինքն կառուցեալ ակն ունի զակն ։

Եւ 'ի թատերն յափշտա-կեալ 'ի մանկանէն զպարծրկ-նեարն ինքնին արկանէ նմա ։ Զտանէ նորա ասէ թէ գե-ղեցկաշէն է , և զագարակէն թէ քաջատունկ , և զկենդա-նագրէն թէ ճշգրտահան ։ Եւ

նճխճն 'ի պէտս որոշմանի ճաքու-ցանէլ առնէյէ Թէոփրաստ ։

գլուխ ամենայնի, զամենայն ինչ ասել և առնել Թուք սուտակապապան, որովք կարծէին հաճոյ լինել:

## Գ.

# ՎԱՍՆ ՄԱՐԴԱՀԱՃՈՒԹԵԱՆ

Մարդահաճութիւն, զի սահմանաւ ճշգրտեսցուք, է կենցաղ անվայելուչ՝ 'ի պատճառս հեշտութեան։ Եւ անշուշտ մարդահաճոյ նա է, որ 'ի հեռուստ ոք ձայն արկեալ բարբառիցի և այր զօրութեան կարդայցէ, և յոյժ զարմանայցէ, և երկոքումբք ձեռօք պինդ ունիցի. և սակաւիկ մի ուղեկցեալ՝ հարցանիցէ, թէ ե՞րբ միւսանգամ տեսանիցէ զնա. և այլ ևս գովութիւնս ասասցեալ՝ այնպէս ուրեմն 'ի բաց գնայցէ ։

Նա ինքն եթէ յիրաւարարութիւն կոչեսցի, ոչ միայն յորոյ կողմանէն կայ՝ նմա և եթ հաճոյ լինել խնդրէ, այլ և ոսոխին. զի հասարակաց նոցա ի-

րաւարար լինել Թուրքի . * և զեկացն ասէ Թէ ուղիղ ևս քան զքաղաքացիսն իրաւաբանեն :

Իւ Թէ 'ի ձաշ ուրեք հրաւիրեսցի , աղաչէ զկոչնատէրն ձայնել զմանկունս իւր . և 'ի մտանել նոցա առ նա , Վա՜յ՝ ասէ , քան Թուզ Թզոյ՝ առաւել նման են սոքա հօր իւրեանց. և առ ինքն ձգեալ համբուրէ, և նստուցեալ առ իւր՝ խաղայ ընդ նոսա ասելով Տիկ , Տապարիկ . և Թոյլ տայ նոցա ննջել 'ի գոգ իւր , Թէպէտ և նեղիցի : Եւ զողայն առեալ 'ի գայեկէն , ինքն ծամէ և ջամբէ ինչ նմա , և 'ի սուինս մանկականս փաղաքշի , և ձարպիկ ու ձարտար քան զհաւն կոչէ : . . . . . . .

* Յերկաթանալեաւր կողմանց ոստխացն էին մի մի նրաստարարք 'ի վէճս, և մեաս նոս եղբարք՝ երկոցան կողմանցն միջնորդ հաստարակօց :

## Դ.

## ՎԱՍՆ ՄԵԾԱՐԳՈՒ-ԹԵԱՆ *

... Բազում անգամ սափրէ զհերսն, և զատամունսն ունի սակաւակս, և զհանդերձսն մինչ չև հնացեալ ատէպ փոփոխէ, և իւղովք անուշիւք օծանի ։ 'Ի հրապարակսն առ սեղանաւորսն գեղգեղի, և 'ի վարժարանսն յայն տեղիս յաճախէ՝ ուր պատանեակքն մարզին, և 'ի Թատրոն յորժամ տեսարանք լիցեն՝ երթայ մերձ առ մեծամեծ զօրավարսն բազմի ։

Վասն իւր գնէ և ոչ ինչ , այլ զի առաքեսցէ հիւրոցն 'ի Բիւզանդիոն . շունս լակոնացիս 'ի Կիւզիկան , և մեղր հիւ-

* Այսէ ղայս Նկարագիր անվերնագիր խառնէին ընդ Երրորդին ։

մխտեան 'ի Հռոդոս. և պատմէ ապա որոց 'ի քաղաքին են, թէ զայս ինչ և զայս արարի ։

Քաջ գիտէ եւս սնուցանել 'ի տան կապիկ և ստանալ մարդավայրի և մկնեխուացի աղաւնիս և վէգս այծեմանց և թռչունս սրուակս Թխուրհացիս և գաւազանս 'ի Լակեդեմոնէ գալարուոս և գորգս անկուածոյս նկարակերտս արամբք պարսկաստանեօք, և վայրագաւութ 'ի բռնամարտկաց և գնդակախաղուց ապարարեզ. և շուրջ յածեալ ցուցս ատնէ հանապազ անգր 'ի ներքս հրաւիրել խմաստասէրս, խմաստակս, զինախաղացս և երաժիշտս արուեստականաց ։ Եւ հուսկ ապա ինքն 'ի հանդիսի անդ ասէ ցմեւան յաղագս հանդիսատեսացն, թէ նոցա է տուեալ զխաղերոյն ։

# Ե.

## ՎԱՍՆ ՍՆԱՓԱՌՈՒԹԵԱՆ

Սնափառութիւն թուի լինել անարժան տենչումն պատուոյ։ Եւ սնափառ այնպիսի ոք է, որ թէ յընթրիս կոչեցի՝ ջանայ երթալ առ կոչնատեառնն բազմել 'ի սեղան։ Զորդի իւր 'ի Դելփիս առեալ տանի՝ անդ փ.ջրել զհերսն.* և հոգայ՝ զի լինիցի իւր սպասաւոր եթովպացի։ Եւ իբրև արծաթոյ մնաս մի ումեք հատուցանելոց իցէ, ջանայ նորս և փայլուն տալ։

* 'Ի հնումն այս սովորութիւն էր ամենայն աթենացւոց՝ յորժամ մանկունքն յարբունս հասանէին. բայց չեւոյ մեծապատուոք և պարծուոք միայն առնէին առ անոքն ջատատոսրութեան։

Եւ ճայլին զոր առ ամէն բու-
ծանէ՝ ոչ մոռանայ զնել սանդ-
ղին , և առնել վահանակ պղ-
ղնձի , զոր առեալ ճայլին տա-
տասկեցէ 'ի սանդուղսն : Եւ
եթէ զարշառ մատուցանիցէ
զոհ , զմորթ խալամոյն եղջերա-
վին հանդէպ մոխր տանն կա-
խէ զձողոյ՝ մեծամեծ պատկօք
շուրջ պատկեալ , զի որ մտա-
նենն տեսցեն ամենեքեան՝ թէ
զարշառ զենեալ է : Եւ յետ
ընդ տապեան 'ի հանդէս հե-
ծանելոյ՝ զայլն ամենայն տայ
ցծառայն տանել 'ի տուն , և
ինքն արկեալ զամզանն՝ մրո-
բակք յոտս ձեմ առեալ զգնայ
'ի հրապարակին :

Եւ երբև սկնդուկն իւր մե-
ռանիցի , գերեզման շինէ նմա
և մահարձան կանգնեալ գրէ
'ի վերայ՝ Ղառաւիղ Մելիտա-
նոյ : Եւ կախեալ յուխտ մա-
նեակ պղնձի 'ի մեհենին Ասկ-

ղեպեայ՝ պսակօք մաշէ զայն և օծանէ զօր ամենայն ։

Ջանայ՝ հնարի և առ պետական առագործերոյն՝ զի խորհըրդոց զոհիցն իւքն լիցի աղգաբար առ ժողովուրդն ․ և զգեցաւ պայծառ պատմուճան՝ պսակ 'ի գլուխ եդանէ առ նոսա և ասէ ․ Ա՛րք աթենացիք , զոհեցաւք իշխանքս գիցամօրն ․ պատարագք մեր ընդունելի են և բարենշան ․ և դուք ընկալարո՛ւք զբարիս ։ Յետ ազդեցուցանելոյ զպատգամս զայս՝ երթայ 'ի տուն և պատմէ կնոջ իւրում, թէ որպէս առաւել քան զոր կամէր յաջողեցաւ նմա ամենայն ։

# Դ. և Ե.

## ՎԱՍՆ ՄՆԱՓԱՌՈՒԹԵԱՆ

## ԱՅԼՈՎ ԿԱՐԳԱՒ

Մնափառութիւն թուի թէ անպատեհ ցանկութիւն է փառաց։ Եւ այնպիսի է մնափառն, որ թէ՛ի կոչումս ուրեք հրաւիրեսցի՝ փութայ մղել առ հացտուն հուպ բազմել յընթրիսն։ Եւ զորդին 'ի Դելփիս տանի հարթել զգէսան, և փոյթ մեծ ունի՝ զի սպասաւոր եթէովպացի զկնի իւր շրջեսցի. և 'ի տալ ումեք մնաս ինչ արծաթոյ՝ ուշ առնէ զնորին տալ։

Եւ թէ զեզն պատարագ մատուսցէ, զճակատ խալամոյն եղջերօքն հանդերձ առաջի դրաց տանն ընդ ցից հանեալ վարսէ, շուրջ բոլորեալ զնո-

վաւ պսակս մեծամեծս, զի որոց մտանենն երևելի կայցէ՝ թէ զեղն է զոհեալ: Եւ իբրև ընդ ասպետան 'ի հանդէս հեծանիցի, ապա այնուհետև իջեալ յերիւարէն՝ զամենայն ինչ զայլ թողու 'ի մանուկն դարձուցանել 'ի տուն, և ըզպատմուճան փառացն միայն արկեալ զիւրև՝ մտրակ յոտս 'ի հրապարակին ճեմի:

Իսկ եթէ օկնդրուկն մեռանիցի, չիրիմ կանգնէ նմա և արձան և գիր 'ի վերայ, թէ Աղնիւ մելիտինեցի: Եւ յաղագըս ձայնին՝ որ 'ի տանն սնանիցի, գնէ սանդղիկ անմռուաց, և առնէ ասպարիկ պղնձի, զի տուեալ զայն ձայնին վազվազեսցէ ընդ սանդղամատունսն: Եւ նուիրեալ օղ պղնձի յասկղեպեան տաճարին, այնչափ արկանէ 'ի նա պսակս, մինչև մաշեսցի:

Ստէպ ստէպ սափրէ զհեր-սըն, զաստուածութեան ունի ապխտակ փայլուն, և զգեստք որ զեռ-պատուականքն էցեն՝ 'ի բաց ընկենու, և իւղովք անուշիւք օծանի հանապազօր ։ 'Ի հրա-պարակս՝ զսեղանաւորօքն դայ, 'ի կրթարանսն՝ անդ դեգերի՝ ուր մանկտին ընդ մարզս եղա-նեն, և 'ի տեսլարանս՝ յոր-ժամ խաղք լինիցին՝ երթայ մօտ առ զօրավարսն նստի ։

Եւ ոչ մի ինչ յիւր պաշտան ոչ ստանայ, այլ առ հեւրան ա-ռաքէ այսր անդր · 'ի Կիւզիկոն շունս լակոնացիս, և մեղր հիւ-միտացի 'ի Հռոդոս · և ապա քաղաքացւոցն քարոզէ՝ թէ զայս ինչ և զայս գործեցի ։

Գիտէ և մարդաձիւաղ 'ի տան սնուցանել և աղաւնիս սե-կելիացիս, և ստանալ ձանս վթաց վայրի և շիշս բոլորչիս Թիւրիացիս և խեցաթիւր մա-

հակս 'ի Լակեդեմոնէ և սրա-
հակս Նկարէնս անկուածոյս
'ի կերպարանս պարսկաց, և
զաւիթ 'ի պէտս ասպարիսի
բռնամարտկաց և գնդաձգու-
թեանց. և այսր անդր ցոյցս
առնէ տալ զայն 'ի սպաս իմա-
տասիրաց, զինաշարժից և նուա-
գողաց. և ինքն ապա յետ հան-
դիսիցն ասէ առ այլ ոք վասն
հանդիսականացն, եթէ Դոցա
աւադիկ է խաղեալդ:

Գուն գործէ և առ հրամա-
տարս ժողովրդեանն, զի զազ-
դեցութիւն զոհից ինքն արաս-
ցէ առ ամբոխն. և հանդեր-
ձաւորեալ պայծառ պատմու-
ճանաւ՝ պսակազարդ ելանէ առ
նոսա և ասէ. Ա՛րք աթենացիք.
զոհեցաք նահապետաց զոհս մօրն
աստուածոց, և հաճոյականք
են պատարագք մեր և բարե-
գուշակք, և դուք 'ի բարիսն
վայելեսջիք: Ապա յետ այսր ադ-

դատաւորութեան գնայ 'ի տուն պատմել կնոջ իւրում՝ թէ զի- մրգ առաւելոյն յաջողեցին նմա կամք իւր ։

## Զ.

## ՎԱՍՆ ԱՄԲԱՐՀԱՒԱՃՈՒԹԵԱՆ

Ամբարհաւաճութիւն անշուշտ թուի լինել ցոյցք անգոյ բարեաց ։ Եւ ամբարհաւաճ այնպիսին է, որոյ կացեալ 'ի կիրճ ծովուն՝ պատմէ եկաց և պանդխտաց, թէ քանի՛ բազում են նորա ինչք 'ի վերայ ծովու . ճառէ և զշահից վաշխի՝ թէ քանի՛օն իցեն . և թէ ինքն որչափ ինչ շահեցաւ և կորոյս . և զայս այսպէս մեծամեծս կատարեալ, առաքէ անդէն զմանուկն առ լումայափոխն առ որում գրամ մի և եթ կայ նորա ։

Եւ առ ուղեկցին պատեհ առեալ գիտէ առնել զճանապարհայն, թէ որպէս ընդ Աղէք-

անդրի զինուորեցաւ, և զիա՛րդ-
եղև ընդ նմա. և ո՛րչափ ակա-
նակուռ բաժակս յաւարի առ-
եալ եբեր ընդ իւր. և զասիա-
ցւոց ճարտարացն վճիռ՝ թէ
քաջ քան զեւրոպէացիսն են ։
Եւ զայս ամենայն համբաւ-
զրուցէ առանց 'ի տարաշխարհ-
ուրեք 'ի քաղաքէն ելանելոյ ։

Ասէ ևս, թէ գիր հասեալ
կայ նմա յԱնտիպատրոսէ, որ
պատմէ՝ թէ եղբօրդ * ինքն է
մեռեալ 'ի Մակեդոնիա ։ Եւ
թէ առաւել նմա իշխանութիւն
առանց մաքսի վաճառս փոխ-
ածից անտի հանելոյ, սակայն
ինքն հրաժարեաց, զի մի՛ ինչ
յումեքէ յաջաղեսցի. զի առ

* Ըստ ոմանց՝ Ցերերորդ ասուր
կամ Ցերիս ասուրս կամ Եւրեք ա-
սուրք են՝ զի մթէաւէ։ Թէոփրաստ
գրէպս խորոյ ծամանակին ատենա-
յատակս ։

մակեդոնացիսն առաւել զգաս-
տութիւն պիտոյ է։

Եւ թէ որպէս 'ի սովի ա-
ռաւել քան զհինգ տաղանդ
ծախք իւր հաշուեցին՝ վասն չը-
քաւորաց քաղաքացւոցն զպէտ-
սըն մատակարարելոյ․ զի զբա-
նալ ումեք ոչ գիտէ։ Եւ եթէ
անծանօթք ոմանք առ նովաւ
իցեն բազմեալ, սակայն զմի 'ի
նոցանէն քուեայս առնուլ՝ հա-
շիւս արկանել․ և անձեցուցեալ
զնոսա ցվեցհարեւր առ մնաս,
եդեալ և անուանս իւրաքան-
չիւր նոցա 'ի դէպ, դրոշմէ
տաղանդս տասն․ և զայն ամե-
նայն նպաստ լինել ասէ յիւրմէ
'ի հանգանակ սեղանոյ նոցա․
և յաւելու՝ թէ ոչ արկանէ 'ի
համար զվերակացութիւնս պա-
տերազմին նաւացն, և ոչ զայլ
ևս հասարակաց պաշտամունս
զորս պաշտեաց ձրի։

Մատուցեալ և առ վաճառա-

կանոնաւոր ընտիր երիւարաց՝ պատ-
ճառի գնել. անտի 'ի Թան-
գարանին անցեալ՝ խնդրէ հան-
գերձս երկուց տաղանդաց, և
մատանւոյն ընդ ծառային՝ Թէ
ընդէ՞ր առանց արծաԹոյ շքեղ
զիմ կնիք: Եւ Թէ վարձուք 'ի
տան բնակիցէ, Իմ հայրենի ա-
պարանք են, ասէ առ անգէտ-
սըն, և վաճառել կամիմ, զի
անձուկ է ինձ յընդունելու-
Թիւն հիւրոց. և Թէ կայ առ
նմա ջուր ցուրտ 'ի ջրհորոյ ան-
նման, և պարտէզ ուռճացեալ
տուստ և փափուկ բանջարօք.
և խոհակեր հմուտ 'ի պատրաս-
տուԹիւն համադամոց, և Թէ
տուն նորա գո՛գ իշխան է, քան-
զի լի է զօրհանապազ. և Թէ
բարեկամք իւր են կարաւան ծակ,
զի ամենայն բարեօքն զոր ու-
նէ՝ ոչ կարէ լնուլ զնոսա:

## Է.

## ՎԱՄՆ ԱՄԲԱՐՏԱՒԱ-ՆՈՒԹԵԱՆ

Իսկ ամբարտաւանութիւն է արհամարհել զայլս առ անձամբ : Եւ այնպիսի ինչ որք է ամբարտաւան, զի որ փութայ ստիպաւ խօսել ինչ ընդ նմա, Ցեա ընթրեաց են, ասէ : Զմեծըս երաւախնդրաց գտանի 'ի զգնալ իւրում. եթէ յաւագութիւն կոչեսցի, զանպարապութիւն պատճառելով հրաժարէ. 'ի բարերարեն ումեք ստիպէ անմոռաց ունել. ոչ ումեք առնու յանձն ինքնին նախ ընդ առաջ գնալ, և վաճառականաց անդամ երբեւ վարձկանաց հրամանս տայ գնալ այգուց առ ինքն :

Զճանապարհայն յերթալն չխօսի բնաւ ընդ ումեք յորոց պատահեննն, այլ գլուխ 'ի վայր

արկեալ գնայ, և 'ապա դարձեալ կոկոզավիզ շրջի, որպէս և նման հաճոյ թուեսցի։

Յորժամ ընթրիս տայցէ բարեկամացն՝ չլինի նոցա հացկից, այլ մտեալ 'ի հնազանդելոցն պատուէր տայ հոգ տանել նոցա. և մինչ ուրեք գնալոց իցէ, կարապետ առաջի արձակէ՝ զեկուցանել թէ ահա գայ։ Ոչ յօծանելն, ոչ 'ի լուանալն և ոչ 'ի կերակուր առնուլ թոյլ տայ ումեք մտանել առ նա։

Եւ թէ հաշիւք ընդ ումեք իցեն, պաշտօնէին հրամայէ ունել զհամարն, և գումար արարեալ գրոշմել 'ի գիրս յիշատակաց իւրոց։ 'Ի նամականս ոչ գրէ՝ թէ Առնիցես ինձ շնորհս, այլ թէ Կամիմ՝ զի այսպէս լինիցի, և Առաքեսցի առ քեզ՝ առնուլ, և Զի մի՛ այլազգ ինչ լինիցի, և թէ Վաղվաղակի ժամ մի յառաջ։

Ը.

# ՎԱՄՆ ԳՈՌՈԶՈՒԹԵԱՆ

Գոռոզութիւն թուի թէ իցէ գահավիժութիւն՝ տատանիլ հարեալ 'ի. բռնակալութիւն։ Եւ այն է գոռոզ, որ թէ ժողովուրդն 'ի խորհուրդ մտանիցէ՝ ընտրել այլ և պաշտօնակիցս իշխանին, յառաջ անցեալ ցուցանէ՝ թէ վխ՛որդ արժան է նոցա ինքնակալս լինել. և թէ այլք տասն զոք իշխանակից նմին 'ի մէջ մատուսցեն, ինքն կայ պնդի՝ թէ բաւական է մին. և 'ի Հոմերական տաղիցն զմին միայն պնդունի, զայն եթէ

Չէ բարւոք բազմաց իշխել,
մի ոք ևեթ իշխան լիցի.
իսկ զայլսն ոչ գիտէ։

Իշխել իշխէ և բանս այսպիսիս խօսել, թէ Մեզ պարտ է առանձինն ուրեք յազգագ

այսր 'ի խորհուրդ ժողովել, և հեռի մեկուսի լինել յամբոխէն և 'ի հրապարակէս, և որ 'ի բարձ աւագութեան հասեալս եմք՝ փոքր մի հանգիստ գտանել: Եւ թէ դատովեցի ինչ յումեքէ կամ անպատուեսցի, կամ տուգա, տսէ, կամ մեզ միայն պարտ է մնալ 'ի քաղաքիս:

Եւ ելեալ զհասարակ աւուրբ, և զօձիկ իւր արկեալ, և կիսակատուր զհերսն փոքրեալ, և զընթացսն սրբեալ զգուշութեամբ, մղէ վարէ զհանդիպեալսն, այսպիսի ինչ ասելով. Զմարթի այլ ևս չմարթի կալ 'ի քաղաքիս յերեսաց շոգմոց և քսու բանսարկուաց:

Եւ թէ որպէս անհնարին տառապի յատեանս 'ի ձեռաց դատախազից. և թէ զարմանայ ընդ այնոսիկ՝ որ սպրդին նեղին ոտնխէթ լինել 'ի գործ հասարակաց, թէ զի՞ արդեւք

խնդրիցեն . և թէ որպէս ծանր և տաղտուկ է այժմ ամենայն ինչ որոց անօրէնքն են և մատակարարք . և թէ զինչ ամաչէ 'ի ժողովն՝ յորժամ նըւաստ ոք և գձուձ առ նմա բազմիցի . և յաւելու, Ե՞րբ իցէ՝ զի ոգի առնուցումք . զի ահա կորնչիմք ծախիմք 'ի պաշտամանց առաւ և 'ի կազմութենէ հանդերձանաց նաւաց պատերազմի :

Եւ թէ քանի՛ ատելի է ռամկավարաց ազգ : Եւ սկզբնապատճառ չարեաց քաղաքին զԹեսեւս ասէ լեալ . զի նա զերկոտասան քաղաքսն 'ի մի ժողովուրդ խառնեալ՝ քակեաց զԹագաւորութիւն . և կրեաց զարժանն, զի նախ ինքն կորեաւ 'ի նոցանէն : Եւ այլ ինչ այսպիսի խօսի առ հեւրան և առ համաքարոյ քաղաքացին՝ որ 'ի նոյնս միաբանեալք իցեն :

## Թ.

## ՎԱՄՆ ՎԻՍՈՒԹԵԱՆ

Վիսութիւն է դաժանութիւն բարուց՝ ի բանս. և վէս այն՝ որ եթէ հարցանիցի թէ ո՞ւր է այս անուն, Զի՞ կայ իմ, ասէ, և նորա. և թէ խօսիցի ոք ընդ նմա, չտայ պատասխանի։ Եւ ՚ի վաճառելն ինչ՝ չասէ գնելեացն քանոյ տայցէ, այլ խոյզ և խնդիր առնէ թէ զի՞նչ գտանիցէ։ Եւ որ մեծարիցեն զնա և առաքիցեն ինչ ՚ի տօնս, ասէ ցնոսա, թէ և ճաշակիցէ իսկ ոչ յընծայիցն։

Ոչ ներէ ամենևին՝ եթէ ոք յանկարծ ակամայ խթիցէ զնա կամ կոխեսցէ ՚ի վերայ նորա։ Եւ բարեկամի՝ որ ՚ի հանգանակ նպաստ յինել ժողիցէ, Ոչ ունիմ, ասէ, տալ. ապա առեալ տանի ինչ, Եւ այս ևս արծաթ, ասէ, ահա գնայ ՚ի կորուստ։

Եւ թէ գթիցէ յուղուոջ, և քարին ևս անէծս և նզովս կարդայ ։ Ցանձն ումէք չառնու սպասել օգուտ ժամս․ ոչ երգել կամի յերախանս, ոչ բան արտասանել և ոչ 'ի պարու անցանել․ և զառ Աստուած աղօթսն գլխովին կարող է ապախտ առնել ։

Ժ.

## ՎԱՍՆ ԲՐՏՈՒԹԵԱՆ

Բրտութիւն թուի լինել տը-գիտութիւն պատշաճից։ Եւ այնպիսի է բիրտ, զի յետ ըմպելոյ խառնակ ինչ զգայուտ դեղոյ՝ անխիղճ ելանէ 'ի հրապարակ ատենի. և զեւղս ոչ քան զծոթրին անուշահոտ ասէ լինել, և մեծ քան զոտնն ագանի կօշիկս, և մեծագոչ բարբառի։

Ընդ սիրելիս և ընդ ընտանիսն չվստահի, և զծառայսն իւր առնու խորհրդակիցս իրաց մեծամեծաց, և յունկն վարձկանաց իւրոց մշակաց ագարակին հեղու զամենայն իրս ատենի ժողովրդեան։ 'Ի նստելն համբարձէ զհանդերձսն 'ի վեր քան զծունկսն՝ մինչև ծանակ կալոյ։

Չէք ինչ ընդ որ զարմասցի
կամ սքանչասցի • իսկ եթէ եղն
կամ էշ կամ քօշ 'ի փողոցի
տեսանիցէ, զկայ առեալ պշու_
ցեալ նկատէ ։ Ոչ խորէ առ_
նուլ ինչ 'ի մատանէ և ուտել
և 'ի վերայ ըմպել զանապակն,
և ջանայ թաքչել 'ի հացարար
կնոջէն, թէպէտ և ընդ նմա
իսկ երթեալ աղայ զպէտս իւր
և զորոց 'ի տանն իցեն ամենե_
ցուն ։

'Ի Ճաշելն՝ միանգամայն և
դրաստուցն խոսս արկանէ •
և 'ի բախել զդրանն՝ ինքն տայ
ձայն 'ի ներքուստ, և առ ինքն
կոչեալ զշունն և բուռն հա_
րեալ զցռուկէն, Սա է սա, ասէ,
պահապան տեղւոյս և տանս և
բնակչաց սորա ։ Եթէ յումե_
քէ արծաթ առնուցու, ըն_
դրէ զդրամն, և խոտեալ ըն_
կենու իբրև թեթևս և աղճ_
գոյնս, և այլս ընդ այնր փո_

խանակէ։ Եթէ ումեք զարօր
տուեալ իցէ յանօթ, կամ ըղ-
ատկաուր կամ զմանգաղ կամ
զպարկ, 'ի տքնութեան գի-
շերին զայն առնէ զմտաւ։ . . .

'Ի քաղաքն ելեալ՝ հարցանէ
որում հանդիպին, թէ քանոյ
իցեն հանդերձք մաշկեղէնք և
տպուխտ ձկան; և թէ այսօր
իցէ ամսագլուխ վաճառոց։ և
անդէն զնովիմբ առնէ, թէ կա-
մի առ վարսավիրայ գնալ վի-
րաւ զհերսն. և ընդ նոյն ճա-
նապարհ մատուցեալ՝ առնու-
տանի յԱրքիպասայ * ձկունս
տախտակաւս։ 'Ի բաղանիսն երգէ.
զկօշիկսն խարխալեալս բևե-
ռակայք առնէ, կամ կարկա-
տանս 'ի վերայ կարկատանաց
արկանէ, և ասէ, թէ Ոչինչ ընդ-
հատ կարծր են քան զեղջեւր։

* Նպարավաճառ ծանօթ ժամա-
նակին։

## ԺԱ.

## ՎԱՍՆ ԶԱԶՐՈՒԹԵԱՆ

Զազրութիւն է անխնամ թողուլ զմարմինն մինչև զզուելի լինելոյ։ Եւ զազիր այն ինչ որ է, որ քոսոտ բորոտ և որքինոտ և վարագացեալ եղնգամբք շրջի այսր անդր. և զայն ամենայն՝ հայրենական ախտս ասէ լինել, զի նոքիմքք և հայրն էր պղծեալ և հաւն. վասն որոյ և ոչ դիւրին ինչ իցէ խառնել ումեք յազգ նորեանց։

Իցեն արգելուք և խոցք և կեղք 'ի խուչակուտս նորա և կոճիճք 'ի մատունս, զորս անդարման թողու՝ զի զայրասցին։ Անութք են նորա գաղանայինք և թաւամազք՝ քաջ 'ի բաց մինչև ցկէս կողիցն և անդր ևս մացառախիս խոզանացեալ. տատամունք սեաւք և մեցոոք,

ժանդատեսիլք և զազրաթորմիք. և այլ ինչ այսպիսի բազում:

Խնչէ 'ի ձորձն, յուտելն՝ խօսել առնու թռալիր՝ և թաւփէ 'ի բերանոյն, և յըմպելն՝ զգայուէ յերես պլլոց. և անկեալ 'ի բաստեռուման անդէն յետ ընթրեացն ննջէ ընդ կըրնոջ իւրում: 'Ի բաղանիս՝ հոտեալ իւղով օծանի, և խոկոյն առնու զհանդերձն: Շապիկս խոշորս և բանձկոնս հնոտիս և աղտեղիս՝ զայն արկեալ զանձամբ, ելանէ 'ի հրապարակ:

Եւ 'ի հացին ճառ արկեալ պատմէ, թէ որպէս կոճ վըրացի տարեալ՝ 'ի վերուստ և 'ի ներքուստ ժայթքեալ մաքրեցի, և զի 'ի նստատծս իւր թխադոյն է մաղձն քան զարդանակն՝ որ անդ 'ի վերայ սեղանոյն: Եւ թէ թքանել կամիցի՝ զսեղանոյն 'ի մատուռուակ անդր ձգէ զխուխն:

## ԺԲ.

## ՎԱՍՆ ԼՐԲՈՒԹԵԱՆ

Ոչ դժուարին ինչ է սահմանել զլրբութիւն. քանզի խայտառակ և նշաւակելի խեղկատակութիւն է: Եւ այսպիսի է լիրբն, որ եթէ կանանց պարկեշտից հանդիպեսցի՝ հոլանեալ ցուցանիցէ զառականսն: 'Ի լռել այլոց 'ի թատերս՝ ինքն ծափս հարկանէ. և որոց այլք հեշտաբար կան 'ի գնին՝ չչէ 'ի վերայ նոցա. և 'ի հանդարտել տեսարանին՝ վիզ ամբարձեալ զգայուս արձակէ, զի զբազմականսն յինքն դարձուսցէ:

'Ի բազմամբոխ հրապարակի մատուցեալ կացեալ առ կաղինս կամ խնձորս և առ այլ միրգս՝ ուտէ և խօսի ընդ վաճառողին, կոչէ յանուանէ զայս ոք և զայն յանցաւորացն՝ որոց

չէ ծանօթ. և եթէ 'ի ձեռաց զոք ուրեք տեսանիցէ, բռնադատէ զնա: Եւ որ 'ի մեծի ոք դատաստանի 'ի պարտութիւն մատնեալ գնասցէ յատեանէն, ընդ առաջ երթեալ խնդակից նմա լինի ընդ հենդն :

Եւ իբրև մայրն առ հաւահարց եղանիցէ, հայհոյէ. և լու 'ի լու ընտանեացն իշխէ հարցանել. Ասա՛ մայրիկ, ո՞ր այն օր էր յորում երկնեցեր զիս և ծնար. և յարէ 'ի նոյն. Ո՛րպէս քաղցր է. և որ յերկոցունց յայսցանէ անձաշակն իցէ չմարթի ստանալ մարդ *:

Ցաղօթս կամ 'ի նուէրան ընդ այլս մատուցանել, ընկենու 'ի

* Մեծութիւն բնագրին կարծեմ փայլ խանգարանաց. քննիցէ իմանան առէլ, թէ քաղցր և դառն յառաջէն քան զծնունդ, և առանց երկուցը չէ որդէծնութեան :

բաժակին հրաւէր կարդալով
ասէ, կազմ և պատրաստ է
ուսանիկ զուարթարարն ամե-
նեցուն որ անդ իցեն . և զայն
ևս եթէ հրամայիցեն, առ դուրս
կայ մանուկն 'ի բոզարածէն՝ ա-
ծել և զնա, զի լուիցուք ամե-
նեքեան զուսանութեան նորա
և զուարճացուք :

## ԺԳ.

## ՎԱՍՆ ՑՈՓՈՒԹԵԱՆ

Ցոփութիւն է սովորութեամբ գործել կամ խօսել զանպատեհս։ Եւ ցոփն վաղվաղուկ է յերգնուլ, և 'ի չարահամբաւելն և 'ի թշնամանել անփոյթ, բարուք գռեհիկ և խենեշ և յամենայնի ձեռներէց։ Կարող է և 'ի լրջաց անգամ և առանց դիմակի կաքաւս անառակութեան կաքաւել ընդ պարս կատակագուսան խաղալկաց։ Եւ 'ի խաղս աճպարարաց՝ մատուցեալ առ մի մի իւրաքանչիւր ժողովէ զպղինձ հանդիսականացն. և որ առանց յետոկարի իցեն և ձրի տեսլեանցն 'ի գինին կալ ժտիցեն, մարտնչի ընդ նոսա։

Պանդոկապետ լինի, այլ և բոզաբոյծ, այլ և մաքսաւոր.

## ԾԴ.

## ՎԱՍՆ ՉԱՐԱՍԻՐՈՒ-ԹԵԱՆ.

Չարասիրութիւն ցանկու-
թիւն է չարեաց, և չարասէր
այն. որ՝ որ յաճախէ առ դա-
տարպարանեալս և պարապասիրա-
տանենք ժողովրդեան, կարծեաւ
թէ գիտաս զիւրև, անձեալն մար-
թոյ չ եւս և ահաւորագոյն լինի-
ցի։ Եւ զաւուրքինեայն ամէն.
Եղէ՛, լցեն որպէս զխայլ լինի-
մարթի. և թէ, Չեք որ բարի
և նոյն են ամենեքեան. և թէ
սուտ հանէ թէ լաւ որ ուրեք
իցէ, և աղաւ զչարն միայն
առէ։

Եթէ ոք զչարէ ինչ հարցա-
նիցէ զնա, վկայէ՝ թէ զայլն ա-
մենայն արդար ասէն զնմանէ
մարդիկ, բայց է ինչ զոր անգի-
տանան. զի այր լաւագարդոյ է

նա , ընդընկերասէր և բարխանուն . և երկայնէ ճառս զնմանէ , որպէս չգտեալ ուրեք այր յաջողակ քան զնա ։

Եթէ 'ի հրապարակ ոք ժողովրդեան 'ի դատ մատնեալ իցէ կամ դատապարտեալ յատենի , 'ի նոցա թեր ելանէ . և խնդրէ երթալ նստել առ նոքօք և տեսել , թէ ոչ արժան է զայլոն դատել , այլ զգործն . և զանձնէ ասէ՝ թէ իցէ շուն ժողովրդեանն՝ զգուշանալ յանիրաւաց . և զի ոչ զոք դատանիցեմք հողաբարձողս իրաց աշխարհին , եթէ զայսպիսիսն անտես առնիցեմք ։

Նա՝ և անզգամաց անգամ ժարհի թիկունս տալ , և յատեանս դարանակալ նստի զօրավիգն գործոց չարաց . և 'ի դատելն զդատաստան՝ զամենայն զքննս ստոխաց 'ի թեւր միոս [illegible]անի ։

Համայն տառապեալ, չարաչա-
րութիւն քոյր է չարութեան.
և ատուտ է առաւելն, Նման
առ Նմանն երթայ։

# ԺԵ.

## ՎԱՍՆ ԱՆՇՆՈՐՀՈՒԹԵԱՆ

Անշնորհութիւն սահմանաւ առեալ՝ է վարք, որ թէպէտ և առանց վնասու, սակայն նեղութիւն հասուցանէ: Եւ այն է անշնորհ, որ զայն ինչ ներհեալն մոռեալ զարթուցանէ, զի ընդ նմա զբանիւք անկանիցի. և որ 'ի չու կազմեալքն իցեն ընդ իւր՝ արգելու, և մատուցեալ թախանձեցուցանէ անսալ՝ մինչ ինքն վայրիկ մի ձեմ առնուցու:

Եւ առեալ 'ի սորընտուէն ըղմանուկն և ինքնին ծամեալ ինչ՝ ջամբէ նմա, և յաւաչս կակուղս պատճառի, և խորամանգագոյն քան զպապն ձայնէ զնա: 'Ի հացկերոյթս զրուցէ, թէ զվերացի կոճ առեալ դեղ

մրրկօք 'ի մէջ և 'ի վերայ ծառոց արձակեսցի, և զի սևագոյն 'ի Թիքնամս իւր է մաղձն, քան զայլ զամենայն՝ որ կայ 'ի մեղուին անդ:

Եւ յանկանելն երևի ընդդիմնոցն յանդգնեն հարցանելոյ. Այլ մեղ-րն եւ առաւ, յորժամ երկնեսցեն զնա և ծնեալ՝ զինչ այն օր էր. և զնոյլխնն ամենայն առնէ. Զի խայթ-քաղցր է. և առանց ընդ եր-կուցն փորձ անցանելոյ չեք մարդ առաւելու:

Պարծին ջուր ցուրտ 'ի ձեռս ունել 'ի տանն, և պարտեզ ա-ռատաբեր մատաղ խաւարանց, և խաղամուք անուշարար կե-րակրոց. և թէ տուն իւր երբև օթևան բաց է յասպնջակա-նութիւն ամենեցուն, վասն զի խռնեալ է յամենայն ժամ. և ծակ կարասն՝ են սփրեալք իւր, զի բնաւ բարերարութեամբք իւրովք չկարէ լցուցանել զնո-սա: Եւ երբև ընթրիս ումեք

տայցէ, նշաւակէ հայցակցին ըմբ-
պատասխանատուարոյ. ծ հացկատակ իւր՝
Թէ ով ոք է։ Եւ ՚ի նուագս
խրախուԹեան խնճոյից ձայն
տալով ամենեցուն, ասէ Թէ
մօտ առ ոտս կայ անդ զուար-
Թարարն խրախճանացելոցն. և
եԹէ և զայն տացեն հրաման՝
առասէլ հասանել անդէն առ
կուան կայ մանուկ բոզաւորէնն,
երԹալ ածել մեզ՝ զի առ հասա-
րակ հեշտասացուք ՚ի ձայն նուա-
գաց երաժշտականուԹեան նո-
րա։

## ԺԶ.

## ՎԱՍՆ ԱՆԱՄՕԹՈՒԹԵԱՆ

Իսկ անամօթութիւն է, որ ընդ սահմանաւ արկցուք, անփոյթ առնել զփառս վասն զօշաքաղութեան : Զի անամօթ է, որ զոր ինքն զրկեաց յառաջագոյն՝ գնացեալ սպա խնդրէ փոխ 'ի նմանէ : Եւ իբրև դէց զոհիցէ, զմիս զոհին յաղեալ շահեմարանէ, և ինքն երթեալ առ այլում ճաշէ. և կոչեցեալ զսպասաւոր իւր, և առեալ հաց և միս 'ի սեղանոյ անտի՝ տայ ցնա և ասէ լու 'ի լու ամենեցուն, Ե՛րթ և դու, սիրելի, խրախ լեր :

Զմսոյ երթեալ, յիշեցուցանէ մսավաճառին զոր երբեմն շնորհ ինչ արարեալ իցէ նմա. և առ կշռոյն կացեալ, միս ըսա

քառնայցէ, հեղլու զանձամբ ըղ-
ջուրն և ասէ, թէ Ահա լուա-
ցայ, և ջնջեալ ոչ ինչ է սուտ ըզ-
նորհ: Եւ ելեալ գնայ կորնչի:

## ԺԵ.

# ՎԱՍՆ ՋՕՇԱՔԱՂՈՒԹԵԱՆ

Ջօշաքաղութիւն է ժողովել շահս անպատեհս ։ Եւ այնպիսի է ջօշաքաղն, որ եթէ հաց տայցէ՝ չդնէ 'ի սեղան բաւական նկանակս . հիւր՝ որ առ նմա իջեւանեալ իցէ՝ փոխ առնու 'ի նմանէ . 'ի բաշխելն բաժին յընթրեկերս , Արժան է , ասէ , կրկին մասունս տալ մատակարարին . և անդէն առեալ դնէ առաջի իւր ։ Գինի եթէ վաճառեսցէ , բարեկամին ևս ջրախառն տայ ։ 'Ի թատրոն յայնժամ երթայ հանդերձ որդւովք , յորժամ հանդիսադիրքըն ձրի թողացուցանիցեն ։

Իբրև հրեշտակութեամբ ուրեք ընդ այլս առաքիցի յիշխանութենէն , զթոշակ ճանա-

պարհին տուեալ նմա 'ի քաղա-քէն՝ 'ի տան Թողու, և յու-ղեկցացն փոխ մուրանայ։ Ծա-ռայքն իւրում բառնայ բեռն 'ի վեր քան զկար, և սակաւ քան զպայլոցն տայ նմա զպէտսն։ Եւ որ ինչ նմա անկանի տալ հիւրոյթ ասպնջականին իւ-րում, զայն ևս 'ի նոցանէն * խնդրեալ երթայ վաճառէ։

Յօծանելն 'ի բաղանիս, ժա-հահոտ է եւղդ զոր գնեցեր ինձ, ասէ ցմանուկն, և օտարին իւ-րով օծանի։ Թէ ոք յընդոծ-նացն գտանիցէ պղինձ 'ի փողո-ցի, չպատկառէ հայցել և իւր մասն, ասելով թէ Հերմէս հա-սարակաց է **։ Զպարեգօտ իւր տուեալ 'ի լուացումն, երթայ առնու յանօթ 'ի ծանօթիցն,

* Յուղեկցաց անտի։

** Հերմէս դիք էին և վաճա-ռականաց և գողոց։

և զայն տղանի յերկարեալ զբաղում աւուրս մինչև անդրէն յետս պահանջեցի : Եւղյա այսպիսիս :

Ճշգաչափ և բարձրայարտակ ամանով ինչինի բաժանէ ընտանեացն զպէտսն, քաջ հայթելով զերեսս թամթաղուն անօթոյն : Դիւրագին աւնու 'ի բարեկամէն, և երիթայ վաճառուէ մեծագնի : 'Ի հատուցանելն զպարտս քառատուն նասուց՝ խորէ դրամն չորս :

Եթէ առ հիւանդութեան չցնայյեն մանկունք նոր աւուրս ինչ 'ի դպրոց, ըստ նմին չափոյ հատանէ զվարձսն. և զընթեռնլիրիոն ամիսն ողջոյն չյղէ զնոսա յուսումն՝ վասն աեսարանաց թատերցն յաճախելոյ, որպէս կր մի' զվարձս ամսոյն բովանդակ տացէ : Յորժամ 'ի ծառայէն հաս աւնուցու, 'ի նմանէ առուգանէ ըզ-

տոյժս դիմամիցն . զնոյն առնէ և յորժամ'ի գործակալէն համարս առնուցու ։

Իբրև կոչեսցես առնիցէ երգակցացն, 'ի միջոյ անտի կեռակրոյն բաժնին խնդրէ որդւոց իւրոց . և զկէսս անդէն բաժնից՝ զկոտորոց սեղանոյն ընդ գրով արկանէ, զի մի՛ սպասահարկումանկտին գողանայցէ ։ Ուղեկից լեալ ուրեք ընդ ծանօթս իւր, նոցա ծառայիւքն պաշտի 'ի պէտսն, և զիւրն 'ի վարձու տայ յայնժամ հեռի ուրեք, և ըզգինսն ոչ բերէ 'ի ծախս հասարակաց ։

Եթէ հանգանակք 'ի տան նորա լինիցին, 'ի համարի առնէ և զոր յիւրմէ անտի արկանիցէ փայտ, պղյտն, աղ, քացախ և ձէթ 'ի ճրագ ։ Յորժամ 'ի սիրելեացն ոք՝ իւր կամ դըստերն հարսանիս առնիցէ, աւուրբք ինչ յառաջ աճապարէ

'խոյս տայ 'ի քաղաքէն, զի մի՛ և նոքին օժտաւորք ընծայատուք լինիցի ։ 'Ի ծանօթիցն զայն ինչ իրս առնու 'ի փոխ՝ որ բնաւ և չպահանջիցին յետոյ. և եթէ դարձուսցէ նա՝ ոչ ումեք փոյթ լինիցի առնուլ ։

## ԺԲ.

## ՎԱՍՆ ԱԳԱՀՈՒԹԵԱՆ

Ագահութիւն է չգիտել զպատիւ անձին՝ որ ծախիւքն լինիցի: Եւ այնպիսին ինչ որ է ագահն, որ զի թէ յողբերգակացն յաղթանակ տարցի՝ տապակ փայտեղէն նուիրէ Սպանդարամետին, մակագրեալ յանուն իւր *: Իսկ և տուրք մատուցին 'ի ժողովս ժողովրդեան, ինքն լուռ կայ, և կամ յարուցեալ 'ի միջոյ անտի զանձն արտաքս ճողոպրէ:

* Ողբերգական ներբողացն մրցանաց յաղթութեան՝ մեծ էր յոյժ 'ի ջանս հելլենացւոց, և փոխարէն նուէրս տային սպանդարամետական դիցն, յորոց 'ի պատիւոյն կատարէին այն հանդէսք թատերաց:

## ԺԹ.

## ՎԱՍՆ ԿԾԾՈՒԹԵԱՆ

Կծծութիւն է յանդգնաբար խնայել և ճշգել զծախս։ Եւ կծծի է, որ և յետ ամսոյ չդանդաղեալ եկեալ գնայ 'ի տուն պարտապանին պահանջել զկէս դանկ իւր։ 'Ի միաժողով ճաշկերոյթս տոհմայնոց՝ թուէ ըզբաժակս իւրաքանչիւր զոր ըմպեն, և նուազ քան զամենայն հացակցացն հանէ նուէրս Արտեմեայ *։

* Յամենայն տեղանս այս օրէն էր, հանել երախայրիս կամ նուէրս փառաւորութեան դիցն Դեմետրի և Սպանդարամետին. իսկ 'ի ճաշս տոհմայնոց, որ էր երիր ժամն ցեղի, Արտեմեայ նուէրք լինէին. որպէս և յարութեան լաւին հասանել մանկանց՝ ոմն հանեալ զոհս

Որչափ և դիւրագին ինչ որ հաշուիցի գնեալ, նա տակաւին Թանկ է, ասէ, շատ։ Եթէ ծառային ամանն ինչ կամ պուտա-նարդ բեկանիցէ, 'ի ռոճկէն նորա տուժէ։ Եթէ յանկարծ բնիոն մի անկեալ 'ի կնոջէն կորնչիցի, վեր 'ի վայր հարեալ վրդովէ զամենայն կահս տանն և զմահիճս և զարկեղս, և ընդ ամենայն խորշս և ծածուկս խիլ արկեալ որոնէ։ Իբրև վաճառիցէ ինչ, այնքանոյ տայ՝ զի մի՛ ինչ շահեսցի գնողն։

Զտայ Թոյլ և ոչ Թուղ մի ուտել 'ի պարտիզէ իւրմէ, ոչ ընդ ապարակ իւր անցանել և ոչ ձէթ մի կամ արմաւ 'ի գետին անկելոցն բառնալ։ Ելանէ շրջի զօր ամենայն այց և խնդիր առնել իւրոց սահմա-

ն շհերան կորեաւ, այնուղէս 'ի փոհթի խարանէին ։

նացն ցանգոց՝ եթէ անխախտուտ կայցեն ։ Ոչ ինչ խղճէ որ 'ի յօր առնել զհաստատութիւն պարտուցն, և 'ի վաշխիցն շարխատա պահանջէ ։

Եթէ խրախուսնա ժողովրդականացն առնիցէ, զխորտիկան մանր մանր կոտորեալ՝ այնպէս մատուցանէ 'ի սեղան ։ Իբրև զուտեստէ ելանիցէ, առանց ինչ առանձնայլոյ դառնայ 'ի տուն ։ Պատուէր տայ կնոջ իւրում մի՛ վառնել զայդ․ մի՛ զպատրոյգ , մի՛ զչամման , մի՛ զգուբրակ , մի՛ զպաշտիկս , մի՛ զլթեռս և մի՛ զաթերս ․ զի այդ մանուկքդ , ասէ , մեծ լինին 'ի գլուխ տարւոյն ։

Համայն ասել, որ ժլատ և ափշան լիցեն , զնոցա և զգանձանակսն է տեսանել ճճեկերս բորբոսեալս, և զբանալիսն ժանգահարս , և զնոսա զլխովլին՝ զի զգենուն ըստ կարի հան-

դերձս նեղս և կարծս, 'ի փոքրիկ և 'ի գոյգն սրուակէ լնուլ օծանելին, գերծուն մինչև ցմորթ մարմնոյն *, և զմիջաւուրբ բոկանան: Եւ առ թափիչսն երթեալ գուն գործեն՝ զի ձորձ խուրեանց ընդ բազում կաւ եկեսցէ, որպէս զի մի՛ ապա փութով աղտեղասցի:

* Իմա, այնպէս պան քերթել՝ զի մի՛ ոտեալ ճարպամներայի հարօտասցին: Եւ 'ի ջեռուցանել արեան բոքխանան՝ զի մի՛ օդք ոտեցն հնասցին:

## Ի.

## ՎԱՍՆ ԿԱՍԿԱԾՈՏՈՒ-ԹԵԱՆ

Կասկածոտութիւն է կարծիք վնասու յամենեցունց ։ Եւ այն որ է կասկածոտ, որպէս առաքեալ զմանուկն 'ի գնել զպէտ-սըն , դարձեալ այլ ծառայ զկնին արձակէ՝ լրտեսել թէ քանոյ 'առնուցու ։ Ցուցի ուրեք ինքն բառնայ զարծաթն , և վա-ւանէ 'ի վտաւան նստեալ հա-մարի ։

'Ի մահիճսն հարցանէ զկին իւր , եթէ աղխեա՞լ իցէ զարկղն և կնքեալ զտապանակն , և նիգ-դըրաց գաւթին արկեա՞լ իցէ․ և թէպէտ նա այո ասիցէ , այլ տակաւին ինքն իսկ յարուցեալ յանկողնոյն մերկ և բոկ , ճրագ լուցեալ , շուրջ գայ տեսանել

ղոյն ամենայն, և այնպէս հազիւ հազիւ 'ի քուն մտանէ ։

'Ի փոխատուաց իւրոց համգերձ վկայիւքն երթայ խնդրել զվաշխսն, զի յուրասալ լինել մի՛ կարասցեն ։ Զձորձս իւր չհամարձակի տալ թափչի՝ որ ճարտարագոյնն իցէ, այլ որում երաշխաւոր հաւատարիմ կայցէ ։ Եւ յորժամ գայցէ ոք խնդրել սպաս ոսկւոյ և արծաթոյ, բազում այն է զի չտայ․ իսկ եթէ ընտանի ոք իցէ և կարևոր, գրեթէ 'ի բռնս փորձեալ և կշռեալ և երաշխաւոր ևս գոգցես առեալ, այնպէս հազիւ ուրեմն տայ յանօթ ։

Սպասաւոր՝ որ ընդ նմա շրջելոց իցէ 'ի քաղաքին, պատուիրէ նմա առաջի իւր գնալ և մի՛ զկնի, զգուշացեալ՝ թէ գուցէ զճանապարհայն փախիցէ 'ի նմանէ ։ Եւ որ գնոց առնուցուն ինչ 'ի նմանէ և ասիցեն,

Գրեմ քանի ինչ պարտիմս, զի չժամանեմ առաքել զարծաթդ, Անհոգ լեր, ասէ, զի թէ և ժամանիցես, սակայն ես եկից զկնի քո ։

# ԻԱ.

## ՎԱՍՆ ՏՐՏՆՋՈՏՈՒԹԵԱՆ

Տրանջողութիւն է ըստգտանել ինչ և 'ի սուրս բարեաց ։ Եւ նա է տրտնջող, որ եթէ բարեկամն իւր բաժին տայցէ տանել առ նա 'ի կոչնոցն, քրթմնջէ առ նուիրաբերն, Յաչաղեցեր յինէն զթանդ և զգինեակդ, և չեղաք արժանի ընթրեացդ ընդ հրաւիրեալսն ։ Եւ առ համբոյրս տարփաւորի, Զարմանամ, ասէ, եթէ ոչ սերտիւ սիրիցես ։ Եւ Դիոսյ ցասմանու՝ ոչ զի արձրևէն, այլ զի անագան ։

Ըստ բախտի քսակ լի գտեալ՝ յուղւոջ, Եւ զի՞ է, ասէ, ոչ երբէք գանձ գտի ։ Եթէ պատուական ծառայի գինս հատանիցէ, յետ թախանձանօք պարտաւեցուցանելոյ զվաճա-

ուղղն, Ջարմանք են, ասէ, այդ-
քան անարգ զինքդ, եթէ ան-
արատ ինչ որ էր դա: Եւ որ
աւետիս խնդութեան մատու-
ցանիցէ նմա, թէ որդի ծնաւ
քեզ, Ցաւեմ, ասէ, զճշմարիտն
և ասա, թէ կէս ընչիցդ գնայց:

Եթէ և ամենայն վճռովք ա-
տենին յաղթեսցէ 'ի դատի,
տակաւին խնդրէ զփաստա-
բանն իւր, իբրև բազում ինչ
յիւրոց իրաւանցն զանց արա-
րեալ 'ի գրի հարկանելոյ: Ցոր-
ժամ սիրելիք իւր հանգանակ
արկանիցեն վասն նորա, և ա-
սիցէ որք եթէ ուրախ լեր, Եւ
որպէս, ասէ, ուր զարծաթ
իւրաքանչիւր հատուցանել կայ
և 'ի վերայ այնր շնորհապարտ
եւս լինել որպէս երախտաւոր:

## ԻԲ.

## ՎԱՍՆ ՇԱՂԱԿՐԱՏՈՒԹԵԱՆ

Շաղակրատութիւն է շատախօսութիւն երկայն և անխորհուրդ բանից: Եւ շաղակրատ է, որ առ ընթեր բազմեալ անձանօթի ուրուք, սկիզբն առնէ նախ զկին իւր նազաբանել, ապա երազ պատմէ՝ զոր տեսեալ է 'ի գիշերին, ապա որ ինչ յընթրիս ուրեք անցք անցեալ իցեն, զամենայն մի ըստ միոջէ 'ի ճառ արկանէ:

Ապա յետոյ իբրև բանն սաստկանայ, խօսել առնու՝ թէ մարդիկ ժամանակիս չարք են և յոռիք քան զհինսն, և թէ ցորեան թեթևագին է 'ի վաճառս, և թէ եկք օտարք եկեալ խռնեալ են յոյժ 'ի քաղաքի. և զի ծով յետ ապան-

դարամետական տօնիցն նաւատորկելի է, և զի թէ անձրև տայցէ Արամազդ՝ բարի յոյժ լինիցի արտորէից, և զի 'ի դաշտմին գործելոց է զագարակ իւր, և զի դժուարին է զկեանսն պաճարել. և թէ զայն ամ՛ Դամիպպոս կանգնեաց զմեծագոյն Ջահն 'ի տօնս խորհրդակատարութեանցն Դեմետրի, և թէ քանի՛ սիւնք իցեն թատեր երգարանին, և թէ երէկ փոխեցի, և թէ այսօր քանի՛ է ամսոյն, և թէ դեմետրեան խորհրդատօնքն 'ի Բոէդրոմիոն ամսեան են և քսանթապատիրքն 'ի Պիանեփսիոն, իսկ 'ի Պոսիդէոնին ագարակային սպանդարամետականքն: Եւ եթէ երկայնամիտ ոք լինիցի՝ առ նա, չմեկնի բնաւ 'ի տեղւոջէն:

Յայսպիսի մարդկանէ զերծուպուրծ 'ի բաց պարտ է պրանալ, եթէ չկամիցի ոք տեն-

դիւ ջերանիլ. զի որ ոչ զպարապոյ ժամն գիտէն ընտրել և ոչ զանպարապութեան, ընդայնպիսեացն գործ է ժուժկալել։

# ԻԳ.

## ՎԱՍՆ ՃԱՐՏԱԽՕՍՈՒԹԵԱՆ

Եթէ ճարտախօսութիւն ոք սահմանել կամիցի, թուի լինել անժուժութիւն խօսից։ Եւ այնպիսի շատախօսն է, որ եթէ հանդիպեսցի ումեք՝ որ տայցէ ինչ նմա զրոյց. Այդ ոչ ինչ է, ասէ, ես գիտեմ զամենայն, և եթէ անսաս՝ պատմեցից։ Եւ 'ի տանել միւսոյն զբանսն յառաջ, Իմացայ, ասէ, Հասկացայ, կաց, մի մոռասցիս զոր ասելոցդ ես. քաջ է, յուշածեր ինձ. այդպէս է ամենեւին. ա՛ս որպէս օգուտ է խօսելն. վա՜հ զոր մոռացայ. փութով հասեալ ես իրացն, հա՛մ վաղուց և ես այդմ մտայի՝ ասեսանել եթէ գայցես և յայն ինչ զոր եսս գիտեմ։ Եւ այլով այսպիսաբար հինիւ թափ ան

կեալ 'ի բանսն, չատոյ ուժ և պատահէին ոգւո կլանել ։

Եւ իբրև այսպէս զամենեսեան վհատեցուցանէ, գնայ մտանէ համարձակ 'ի կաճառեալ ակումբս ատենից, և 'ի միջոյ խորհրդականութեանն գնոսա 'ի փախուստ ցրուէ ։ Եւ 'ի վարժարանս իսկ և 'ի կուսանոցս մտեալ՝ խափան լինի հրահանգաց մանկտւոյն, և մատուցեալ զրուցատրէ ընդ մանկավարժսն և ընդ մարտուսոյցսն ։ Եւ եթէ ասիցէ ոք թէ գնամ, զհետ նորա եկանէ գայ մինչև 'ի տուն նորա ։

Խրաշեկ լեալ խնդրոց ժողովոյն, լու առնէ այսր անդր. պատմէ այսմ այնմ զմաքառութիւն որ առ Արիստոփոնիւ եղև *, և զլակեդեմոնացւոցն·

* 'Ի մէջ Դիմոսթենի և Եսքինէայ հռչակաւոր վէճ ատենական

մարտս պատերազմաց՝ որ առ Լիւսանդրիւ, և զոր ինչն երբեմն գովութեամբ խօսեալ իցէ ճառս 'ի ժողովրդեանն . և յասելն անդ չարախօսութիւն խառնէ զամբոխէն, մինչև կամ մռանալ բնաւ ունկնդրացն , կամ 'ի քուն լինել, և կամ մինչ դեռ տակաւին բանքն 'ի բերան իցեն՝ Թողուլ և 'ի բաց գնալ ։

Դատ եԹէ վարեսցէ ընդ այլս, արգելու զընկերան 'ի գատելոյ. 'ի Թատերս ընդ այլոց պատահեալ՝ խափան լինի տեսուԹեանըն . տաճարակից խրախճա-

յաղագս պատճէն , ոչ շատ ինչ յառաջ քան զառատուրս Թէոփրաստի ։ Այս՝ և ըստ Հերդէմոնացւոցն էրք , որով զօրաւ էղև պեղոպոնէսական բազմամեայ պատերազմին , զորոյք պատառատեալք էին և գաղձանօք ամէնեցուն ։

նաց հանդիպեալ՝ ուտել չթողացուցանէ ։

Որպէս զի դժուարի՞ն է լռել շատախօսի, և իբրև 'ի լպիրծ կայ լեզուն . թէ և քան զծիծառունս կարկաչոտ յանդիմանեսցի լինել, ոչ լռեսցէ ։ Եւ իւրում իսկ մանկութեան խաղ եղեալ՝ համբերէ, յորժամ 'ի նիրհ անկանել նորա ձայն տացէ ոք 'ի նոցանէն և աղաչիցէ, թէ պատմեա ինչ մեզ, հայրիկ, մինչև առցէ զմեզ քուն ։

## ԻԴ.

## ՎԱՍՆ ՍՏԱՅՕԴՈՒ-ԹԵԱՆ

Ստայօդութիւն է կցկցել իր և բան սուտ ըստ քիմս: Եւ ստայօդ բարք այն է, որ՚ի համդիպել բարեկամին առ ժամոյն ձևանայ և ժմտելով հարցանէ. Ուստի՞ գաս, զի՞նչ բանք են, իցե՞ն ինչ զրոյցք յաղագս այսր կամ այնր: Եւ անդրէն վերըստին հարցանէ. Չիցե՞ն ինչ զրոյցք նոր. և սակայն աւետիք բարեաց են: Եւ չինացեալ պատասխանւոյ, զկնի կցէ. Զի՞նչ ասես, չլուա՞ր ինչ. խնջոյս իմն ուրախութեան Թուիմ մատուցանել քեզ նորանոր զրուցիւքս:

Եւ անդէն առ ձեռն պատրաստ կայ նմա զօրական ոք կամ մանուկ Աստիայ փողարի

կամ Լիւկոն Ճարտար 'ի Նմին
իսկ 'ի պատերազմէն եկեալ *,
յորմէ և ես ինքն լուայ, ասէ։
Զի այնպիսի վկայք են նորա
բանիցն երաշխաւորք, որոց ոչ
ըստգիւտ ինչ ոք ունիցի գնել։
Արդ սոքա պատմեցին ինձ,
ասէ, եթէ որպէս Թագաւորն
և Պոլիսպերքոն Ճակատ տու-
եալ յաղթեցին, և ձերբակալ
եղև Կասանդրոս**։ Եւ թէ ա-
սիցէ ոք ցնա, Հաւատամս զու

* Զիրս և զանցիւս իւրոյ ժա-
մանակին յատուկ օրինակի ածէ Թէո-
փրաստ ։

** Թագաւորն էր Արիդէոս Եղ-
բայր Աղէքսանդրի Մեծի, իսկ Պո-
լիսպերքոն զօրավար Աղէքսանդրի.
որոյ մարտուցեալ՝ 'ի պարտութիւն
մատնեցան առաջի Կասանդրի.
իսկ սոքա զրոյցք սուտք են 'ի սոփ-
իստէն յօդեալք ընդ հանգամանս ի-
րացն ճշմարտութեան ։

պդոցին, ասէ ․ Քաղաքս ողջոյն հնչէ համբաւովն, և ելանէ երթայ հռչակ․ զի ամենայն ինչ զմի զայդ գոչէ ։

Զայս զկուսոյն պատմէ, և թէ նախձիր մեծ գործեալ է․ և թէ այն իսկ նշան լինի նմա, զի որոց մատն է յիրս աշխարհին՝ զամենեցուն նոցա զերեսս պղադունեալ տեսանէ ։ Ասէ ևս, թէ լուաւ զի առ նոսա թաքուցեալ կայ 'ի տան զաւուրս հինգ այր ոմն եկեալ 'ի Մակեդոնիոյ՝ ամենայնի ականատես ։ Զայս ասացեալ՝ աղէտանայ, իբրև 'ի սրտէ ողորմուկըս արկանէ․ Զիա՞րդ թուի ձեզ, ասէ․ վա՜հ եղուկ Կասանդրոս, ո՜հ Թշուառական․ առնուցո՞ւս 'ի միտ՝ զինչ է բախտ ։ Ապա գամագիտ այնուհետև բանիցն լեալ, 'ի վերայ բերէ․ Այլ զայս դու միայն գիտասջիր, ասէ․ և ընթացեալ ընդ

քաղաքն ողջոյն զնոյն զորոց տայ ամենեցուն ։

Զարմացեալ եմ ընդ արագ- ընդ այգուսեկ. զի՞նչ արդեւք խնդրիցեն զաւասպելոյդ կար- կատելով. զի ոչ միայն սուտ խօսին, այլ և ձեռնունայն ե- լանեն ։ Զի և բազում անգամ մինչ դեռ ոմանք 'ի դոցանէ ունկնդիրս զինքեամբք խմբէին 'ի բաղանիսն, զհանդերձսն կո- րուսին. և կէսք 'ի Սոփեկեան գաւաթին ընդ ծով և ընդ ցա- մաք Համարաւակելովն յաղթա- նակ կանգնեալ, ատենաղանց դատեցան *. են և որ բանիւք քաղաքս առին քաջաբար, և առանց ընթրեաց ննջեցին ։ Ար- դարև ողորմելի են կեանք նո- ցա. զի՞ որ գաւիթ, ո՞ր կրպակ

* Պարփաւորեցան, փուգանէ- ցան վասն չերխելոյ յափենի բոփ կիփին եդելոյ ։

Գ2

և ո՛ր կողմ հրապարակէն կայ-
ցէ, յորում զցերեկն ամենայն
չդեգերիցին նոքա՝ խեղդ ար-
կեալ բանիւք ստութեան թա-
փել զոգիս ամենեցուն որ գնի-
ցեն նոցա ունկն ։

# ԻԵ.

## ՎԱՍՆ ԱՊՇՈՒԹԵԱՆ

Ապշութիւն սահմանեալ ասացեալ է դանդաղութիւն մտաց 'ի բան և 'ի գործ : Եւ ապուշ այն ազ է, որոյ ինքնին հաշիւս ինչ և գումար արարեալ քուէիւք, ցայն որ մերձն բազմեալ իցէ հարցանէ՝ թէ քանի առնիցէ : Եւ եթէ յատենի կալ հաստանիցէ 'ի պատասխանիս ամբաստանութեան, մոռաց եղեալ յագարակ իւր գնայ :

Ցորժամ թատերաց 'ի զնէին կայցէ, խոր 'ի քուն ըմբռնեալ մինչև յարձակիլ ժողովրդեանն միայն գտանի : Հացակերութեամբ շուայտացեալ, և գիշերայն արտաքս ելեալ 'ի կարիս որովայնի, խածանի 'ի շանէ դրացւոյն : Առեալ ինչ ինքնին դնէ 'ի տե-

զի ուրեք, և ապա 'ի վեր և 'ի վայր յուզէ զայն և չկարէ գտանել:

Իբրև զեկուցէ ոք Նմա, եթէ այս անուն բարեկամ քո վախճանեցաւ, զի 'ի թաղումն երթիցէ, տրտմեալ և յարտասուս հարեալ, ապա ասէ, Ե՛հ բարի է: Ոչ այդչափ միայն, այլ և եթէ զարծաթ իւր առնըլոց իցէ 'ի պարտապանացն, վկայս ընդ իւր տանի:

Եւ ձմերանի կապի ընդ ծառային, թէ ընդէ՞ր չցնեցեր մեզ ձմերուկս: Զմանկունս իւր տագնապաւ ստէպ վարեալ յարշաւ և յըմբշամարտս, վաստակաբեկ և տաժանակոծ 'ի ցաւս արկանէ: Եւ յանդի եթէ ինքն ոսպնաթան եփիցէ, երկիցս արկեալ աղ 'ի ապուրն՝ անուտելի առնէ:

Եւ իբրև Արամազդ անձրև տայցէ, Քաղցր է, ասէ, Նշմա-

րել զաստեղս, Թէպէտ և այլք ասիցեն՝ Թէ կպրոյ նման սեաւ են երկինք։ Եւ հարցեալ յումեքէ, Թէ քանի՞ ինչ մեռեալս կարծիցես հանեալ այսօր ընդ դուռն Հռոմայ, Որչափ ինձ և քեզ բաւական լինիցին, ասէ։

## ԻԶ.

## ՎԱՍՆ ԱՆԺԱՄՈՒԹԵԱՆ

Անժամութիւն է չընտրել զդէպ ժամանակ, որով այլոց վիշտ հասանէ: Եւ անժամ է, յորժամ ոք եկեալ բան և խորհուրդ 'ի մէջ առնուցու զիւրաց իւրոց ընդ այնպիսումն՝ որ անպարապն է յիւրոց ծանր զբաղմանց: Նա՝ և զննջեալն երթեալ յարուցանէ, զի զրուցատրեսցէ ընդ նմա. և որ 'ի չու կազմիցին՝ խափանէ, և մատուցեալ խնդրէ՝ զի սպասեսցեն մինչ ինքն զգնայցէ:

Եւ յորժամ սիրուհին իւր ջերմացեալ դնիցի, ցուցս և կայթս առ նմա յօրինէ. և որ վասն երաշխաւորութեան 'ի տուգանս մատնեալ իցէ յատենէ, մատուցեալ աղաչէ զնա՝ առնուլ զինքն յերաշխի. և

յորժամ վճիռ դատոյն հատեալ և վճարեալ իցէ, յայնժամ գայ հաստանէ վկայ լինել։

'Ի հարսանիս հրաւիրեալ, անդ սկսանի ղադդէ կանանց չարախօսել։ Որ յերկայն ուղևորութենէ այն ինչ մտեալ իցեն, զնոսա հրաւիրէ գնալ շրջագայել ընդ իւր։ Եւ զոր միանգամ վաճառեալն իցէ յառաջագոյն, կարօղ է 'ի վերայ այնր և այլ ևս աճել կացուցանել առգնողս՝ որ առաւել տայցեն նմա զգինան։ Եւ որ լուեալ և ուսեալ ինչ իցեն կանխաւ, յառնէ զնոյնս 'ի բնէ վարդապետել նոցա։ Մատղեալ հոգայ զոր չկամի ինչ ոք թէ առնիցի, բայց ամաչէ ասել թէ մի՛։

Որ զոհս հանեալ իցեն և ծախիցեն 'ի կոչունս, առ նոսա երթեալ կոտոր մի մուրանայ։ Եթէ ծառայ գան ըմպիցէ, կա-

ցեալ առ Նմա պատմէ՝ Թէ և
իմ մանուկ երբեմն այսպէս
բրապոհ եղեալ, չոգաւ խեղդ-
ւու: Իրաւարար կացեալ, մինչ
դեռ կողմանքն երկոքին 'ի հաշ-
տութիւն գալ հաւանեալք է-
ցեն, նա զնոսա ընդ իրեարս
արկանէ: Եւ պարել կամեցեալ
զայն որ չև իցէ ընդ զինուս մը-
տեալ՝ զձեռանէ առեալ ձգէ:

# ԻԷ.

## ՎԱՍՆ ԸՆԴՎԱՅՐԱՀՈ-
## ԳՈՒԹԵԱՆ

Ընդ վայրահոգութիւն թուի անշուշտ լինել բան և գործ 'ի ցոյց լաւականութեան ։ Եւ այնպիսին է ընդվայրահոգ, որ յարուցեալ խոստանայ զոր չկարէն . և թէ ամենեքեան հաւանին իմիք արդար լինելոյ, նա զմիոյ իմեքէ հակառակութիւն յարուցեալ՝ յանդիմանի ։ Հրաման տայ ծառային խառնել զինի առաւել քան զոր կոչնականքն կարեն ըմպել ։

Կռուելոց կրճիմ ընդ մէջ անկեալ, եւս առաւել բորբոքէ ։ 'Ի Ճանապարհ յոր ոչ գիտէ՝ առաջնորդ մատնէ, և ապա չկարէ ելի աղագս գտանել ։ Մատուցեալ հարցանէ զզօրագլուխն . երբ Ճակատ յօրինես-

ցէ և զի՞նչ տացէ հրամանն յետ վաղուին։ Եւ առ հայրն երթեալ պատմէ, թէ մայրն արգելեալ 'ի քուն է 'ի սրսկապանե անդ։ Եթէ բժշկին պատուէր եդեալ իցէ չտալ գինի տապացելումն, ինքն Տ՛ուք, ասէ, զի զփորձ առնուլ կամիմ՝ թէ 'ի լաւ անդր շրջիցի՞ արդեւք հիւանդն։

Եթէ ուրուք կին մեռանիցի, արձանագրէ 'ի վերայ շիրմին զանուն զառնն նորա և զհօրն և զմօրն և զնորին ինքեան ըղկնոջն, և թէ որպիսի ինչ ոք է. և յարէ զկնի, թէ որքա ամենեքեան ընտիրք և պատուականք էին։ Եթէ երգնուլ հաւանիցէ, ասէ առ որ շուրջն կան՝ թէ և յառաջ բազում անգամ երգմնի եղեալ եմ։

# ԻԸ․

## ՎԱՄՆ ԾԵՐՈՒՍՄՆՈՒ-ԹԵԱՆ

Ծերուսմնութիւն թուի ինձ ձիգըն և ջան ՚ի վեր քան զհասակն ։ Եւ ծերուս կամ անագանուսումն նա է, որոյ անագանի ընդ ուսումն եկեալ, և վաղթանամենի ուսեալ ՚ի բերան տաղս քերդածաց, արտասանէ ՚ի խնջոյս, և վերանայ բանն ՚ի նմանէ ։ Եւ յորդւոյ իւրմէ հրահանգի ՚ի տեղ և յասպար և ՚ի վերջապահութիւն բանակի ․ և ընդ պատանեակս գումարի ջահարշաւ լինել ՚ի տօնս դիւցազանց *։

* ՚Ի տօնս Սպանդարամետին և այլոց դից ոմանց և դիւցազանց երիտասարդք ջահ ՚ի ձեռս բանդագուշեալ և կոկոզաջեալ ապաստա-

Եթէ 'ի զահս Հերակլի կո-
չեսցի, եղեալ զհանդերձսն՝
բուսն հարկանէ զարջառոյն
ընդունելն զնա. և երթեալ ընդ
հրահանգս վարժոցացն անցա-
նէ: 'Ի տեսիլս խաղուց գուե-
հաց զերիս և զչորս նուագսն 'ի
գլուխ դեգերեալ մնայ, 'ի միա-
առնուլ զեզանակս երգոցն:

Սարագեայ* նուիրեալ զանձն
'ի նորընծայութիւն, գերազան-
ցել նկրտի զայլովք առ քրմին:
Քրմուհեացն սիրելի մտանէ,
և նդախարխար զգլուխս տար-
փածուին արարեալ, և չարա-
գան 'ի հակառակորդ հոմանւոյն

ծաղաղարէ լինելով ընդ փաղափն
ընթանային:

* Սպանդարամետական խորհըր-
դոյն և կրօնից պաշտեալ զանձն 'ի
նորընծայութիւն. զի Սանդարամետ
է Սպանդարամետ, որ այն ինքն է
Դիոնիսոս, Բաքոս:

Թաղեալ, 'ի գաստատաստան վարէ զնա ։

Եթէ զայլոյ ուրուք ձի կալ-լեալ յափշտակ գնայցէ, ջա-նայ զճանապարհայն ընդ կիրթ ձիավարութեան ելանել, և ան-կեալ վիրաւորէ զգլուխ իւր ։ Ջհանդանակողն ընդ իւր 'ի գինեբրուս՝ առնու տանի 'ի տատնլտերեան խաղս * ։ Եւ զերկայն արձանին խաղս խա-ղայ **, և ընդ արքանեկին նետ-ընկեց լինի, և ընդ մանկա-ծուլին աշտէնս արձակէ, և խառն ընդ մանկտին դասալքէ 'ի նմանէ՝ իբրև յանհնարաց իմն կարգի գնելով զանձն ։ 'Ի բաղանիս

* Խաղք նմանանշէին անարժանք, և այնոր հասարակին ամենեքին անվա-յելչականք ։

** Էր այրծան կամ կոծող ինչ, յոր զնեփան արխանէին որք 'ի դի-պակցութեան կամէին տաանել ։

ըմբշամարտեալ՝ ստէպ ստէպ զգայականն տատանէ, զի քաջանկիրթ երևեցի : Եւ յորժամ կանայք լցեն, 'ի կաքաւմտաբերէ՝ անձամբ անձին դաշնակս մրմնջելով :

## ԻԹ.

## ՎԱՍՆ ՎԱՏՈՒԹԵԱՆ

Վատութիւն թուի թէ երկիւղածին ինչ լքումն իցէ սրտի և մտաց ։ Եւ վատ այն ինչ ոք է, որ 'ի նաւելն՝ զսարաւանդան նաւս հէնից ասէ լինել. 'ի ծփել ալեացն՝ հարցանէ, եթէ իցէ՞ ոք 'ի նաւին աննուէր դից *. և զաչսն 'ի վեր ամբարձեալ՝ հարցանէ զնաւուղիղն, եթէ զկէս ուղւոյն ունիցի՞, և զի՞ արդեւք խորհիցի զօդոցն ։ Եւ առ ընթերակացն ասէ, թէ յանրջոց ինչ զարհուրեալ եմ. և հանեալ զպարեգօտ իւր՝ տայ ցմանուկն,

* Որ չէին ընծայեալ 'ի խորհուրդս և 'ի կրօնս դից, ամբարիշտ համարէին, և նաւելն ընդ նոսա՝ վտանգաւոր ։

և աղաչէ փոքր մի 'ի ցամաք կոյս վարել զինքն ։

Եթէ ընդ հետևակամարտս զինուորեալ գտանիցի, երբև այլք 'ի թիկունս ուրեք հասանելոյ զէն առնուցուն, նա ձայն առնէ նոցա և աղաչէ, կալ վայր մի նախ տեսանել. Զի գործ է, ասէ, ճանաչել՝ որ կողմ թշնամեացն իցէ ։ Իսկ զխօշիւն խաղմին առեալ, և տեսեալ զանկեալսն 'ի մարտին, ասէ առ որ մերձն կան, թէ առ ճեպ տագնապին 'ի զէն ընթանալոյ մոռացայ առնուլ զսուսերս ։ Եւ պնդի 'ի խորանն, և անտի դէտ հանէ զմանուկն՝ հայել լրտեսել թէ ուր արդեւք իցէ թշնամին. և անդէն թաքուցեալ զսուրն 'ի սնարս մահճացն՝ ընդ վայր յածի բազում ժամանակ երբև 'ի խոյզ և 'ի խնդիր նորին ։

Եւ 'ի վրանէ անտի տեսեալ՝ զի 'ի սիրելեացն զոք ածեն վի-

րաւոր , ընԹացեալ առ նա քա֊
ջալերէ սրտապնդէ , ուս տայ
ընդ նոքա մտանէ , առեալ տա֊
նի . և սպառ բժշկուԹեան հա֊
րեալ , ջնջէ զարիւնն սպնգաւ ,
և նստեալ առ նմա՝ զձանձան 'ի
խոցոյն վանէ . զամենայն ինչ
առնէ , բայց միայն զի ընդ Թըշ֊
նամիան 'ի կռիւ մի՛ մտցէ : Եւ
մինչ դեռ 'ի նշան մարտի զպա֊
տերազմականն նուագան փողարն
գոչեցէ , նա նստեալ 'ի խորանի
անդ , Գրող զքեզ տարցի , ասէ ,
սև արև . ստէպ անդուլ ազդե֊
ցուԹեամբդ չտաս մարդոյ նիրհ
առնուլ :

Եւ յօտարին վիրաց արիւ֊
նաԹաԹաւ ընդ առաջ ելեալ
դարձելոցն 'ի կռուոյն , պատմէ՝
Թէ ո՛րպէս 'ի վտանգ անհնարին
տուեալ զանձն՝ զոմն 'ի սիրե֊
լեացն ապրեցոյց : Եւ 'ի ներքս
առ անկեալն վիրաւոր մուծա֊
նէ զնոսա , տեսանել զքաղաքա֊

ցին իւրեանց և զառհմնայսն. և միում միում 'ի նոցանէ կա֊ցեալ զրուցէ, թէ զկնորդ ինք֊նին 'ի գիրկս իւր բարձեալ ած յանձանձեաց զնա 'ի վրան անդր ։

## Լ.

## ՎԱՍՆ ՍՆԱՊԱՇՏՈՒ-ԹԵԱՆ

Սնապաշտութիւն Թուի թէ իցէ աւելորդ երկեւղ դից : Եւ սնապաշտ է, որոյ լուացեալ յաղբեր զձեռսն և սրսկեալ զանձամբ զջուր սրբութեան, առեալ դափնի * 'ի բերանն՝ այնպէս շրջի զօրն ցերեկ : Եւ զՃանապարհայն՝ եթէ անցցէ զնովաւ կատու, չգնայ յառաջ՝ մինչև երթիցէ ոք ընդ նոյն, կամ թէ ինքն ընկենուցու քարինս երիս 'ի վերայ ճանապարհին :

Յորժամ օձ 'ի տանն տեսանիցէ, եթէ պարիասն իցէ՝ զՍա-

* Զդափնիս նանրահաւատք կարծէին էին, թէ հալածիցէ զամենայն վնասս՝ յորոց վերայ փռանիցի :

բազմոս կարգայ, իսկ եթէ սուրբ ատացեալն՝ անդէն վաղվաղակի 'ի մեհենի կանգնէ։ Որ 'ի կեցս ճանապարհաց վէմք կայցեն օծեալք, մատուցեալ հեղու 'ի վերայ նոցա զշիշ իւղոյն, եւ 'ի գուճս անկեալ երկիր պագանէ եւ գնայ։

Եթէ մուկն զպարկ ալերն կրծիցէ, երթեալ զկխուսահմայ հարցանէ, զինչ գործել իցէ. եւ առեալ պատասխանի, թէ երթ առ կարկատել մորթեգործին, ոչ անսայ, այլ 'ի բաց հանէ զպարկն եւ զոհս ընդ այնր մատուցանէ։ Սակայն եւ յաճախ որբէ զտունն իւր, ասելով թէ Եկատեայ * արկածք 'ի ներքս կան անկեալ։

* Եկատէ դիք լուսինն էր, առ որ հանէին զպատճառս վերնոտութեան կամ լուսնոտութեան եւ զայլոց ինչ ախտից. եւ այդ էին առ-

Եթէ յերթայն 'ի տուն բու-
տէստանեցէ, խռովի և գոչէ,
Վէհ Աթենաս. և այնպէս ա-
պա անցեալ գնայ : Ոչ 'ի գե-
րեզմանս ելանէ, ոչ յուղարկ
մեռելոյ և ոչ առ ծննդական
կանայս առնու յանձն գնալ.
այլ Պիտոյ է ինձ, ասէ, սուրբ
լինել 'ի պղծութենէ : 'Ի չոր-
րորդս և յեւթներորդս աւուրց
հրաման տայ գինի եփել 'ի տան,
և ելեալ գնէ մրտենիս և պնակ
մի կնդրուկ, և մտեալ պսակէ
զօրն 'ի բուն զհերմափրոդիտա-
կան դրօշեալսն * :

Ճաշին Եչափեան : Այս և յա-
Չորրդին ամենայն անոփէ պաշտա-
մունք էին և հարց խափանք ըստ է
մի իմէ դիցն նարծեալ փեսլու-
թեանց :

* Դրօշեալք էին՝ որոց Գլուխ
էր Աֆրոդիտեայ, իսկ այլն ան-
նայն՝ Հերմեայ : Գինին յամենայն

Եւ իբրև երազ անցանիցէ , գնայ առ երազահանս և իղձս և հաւատգէտս , հարցանել՝ թէ առ ո՛ 'ի գիւց կամ 'ի դիւցուհեաց արժան իցէ յաղօթս կալ : Եւ ձօնեալ զանձն առ ոմիշեական * խորհրդակատարան՝ երթայ ամսոյ յամիս հանդերձ կնաւ . իսկ թէ կլինն չպարապիցէ , առնու ընդ իւր զգայեակն և զմանկունսն :

Եւ եթէ 'ի ծով լողանալ կամիցի , և հայիցի ոք ընդ նա , խստորս զգլխոյն արկանէ , զի մի՛ ոք չարակնեսցէ 'ի գեղ նո-

պաշտամունս յաճախեալ էր նուէր հեղեալ դից . իսկ մուրքն յօնի Աֆրոդիտեայ :

* Որֆէական խորհուրդքն նոյն իսկ ոպանդարամեքականքն են . և քուրմք նոցա խորհրդածուքն՝ մոլիք ոմանք էին և երից դանգաց գինք :

րա *։ Եւ ելեալ 'ի կերպս փողո-
ցաց՝ լուանայ զգլուխն, և կո-
չեցեալ քրմուհին՝ խնդրէ սըր-
բել զինքն մկնտոխով և սկընդ-
կաւ **։ Մոլի զոք կամ վերնոտ
Թէ տեսանիցէ, սոսկացեալ
քստմնեալ 'ի ծոցն Թքանէ ։

* Ցերթին իմաստր Բերի է 'ի
բնագրին և աշօր․ այդպէս մար-
Թի յնանալ և լրանալ։

** Զմկնտոխն և զսխնդուռն ըն-
հեալ ծխէին շուրջ պարթեցելոյն ։

# ԼԱ.

## ՎԱՍՆ ՉԱՐԱԽՕՍՈՒԹԵԱՆ

Չարախօսութիւն գրգիռ է հոգւոյ 'ի բանս չարս ։ Եւ չարախօս այն է, որ հարցեալ զումեքէ՝ թէ ով ոք իցէ, համգոյն տոհմամթիւ ծննդաբանիցն՝ Արդ նախ, ասէ, յազգէն նորա ըսկիզբն առից ճառելոյ. և ազգահամարն այս է ։ Հայր նորա յառաջ Սովսիաս ոմն անուն էր, և 'ի զօրականին եղև Սովսիստրատոս, և ապա 'ի ժողովրդականսն գրեցաւ ։ Մայր նորա յազնուաց Թրակացւոցն է, և անուն նազելոյն Ղուշանադրաւ * ։ Եւ զացանէ ասի՝ թէ

* Զանուանդ առ 'ի ծաղր ասէ։

քաջազգիք են յաշխարհէն իւ-
րեանց . իսկ այրդ այդ , այնպի-
սեացն զաւակ , չար և մորակի
արժանի ։

Առ այլ ոմն ասէ . Գիտեմ
զիտեմ զկանայսն՝ զորոց զուգ-
առ իս զառանցես ։ Եւ առ
այլս անցեալ՝ ասէ . Այս կա-
նայք են՝ որ զանցաւորս ՚ի Ճա-
նապարհէ յափշտակեալ վա-
րեն , զդքին և առ զուրս զա-
թին հպատակեն ։

Եւ եթէ այլ ոք ուրեք բամ
բասիցեն զոք , զկնի կցէ և նա .
Զայրդ զայդ , ասէ , ես քան
զամենեսեան առնեմ . զի և
ժահադէմ ոք է յերեսացն , և
չարեօք անզուգական ։ Եւ նը

ծանէ լուրախօսպ , որպէս թէ ա-
ռէլ թէրրնա , Ճշմարիտ նմա պատա-
ցեալ մնմանէ նէբրն զագրաստ բո-
ղնփոք ։

շան այն է, զի ձենով իւրում՝ որ բազում տաղանդս երեր նմա ընդ իւր պաշտատականս, երկս պղինձս տայ 'ի ռոճիկ. և զմանուկն ծնեալ նմա 'ի նմանէ՝ ցուրտ ջրով հրամայէ լուանալ յաւուրն Պօսիդոնի * :

Եւ յակումբս բազմականի 'ի յառնել ուրուք և գնալ, զնա 'ի ձեռն առնու. և 'ի նմանէ սկիզբն արարեալ՝ ոչ դադարէ մինչև յամենայն ընտանիս նորա հասուցէ զլուատանման. և զխախձանեալն անգամ ընդվայր հարկանէ: Եւ զայս ամենայն՝ համարձակութիւն կոչէ և ռամկապետութիւն և ազատութիւն, և 'ի կեանս աշխարհիս զայն քաղցր քան զամենայն վարկանի:

* Տօն՝ որ 'ի խոր ձմերայնի հանդիպէր:

Այս չարախօսութեան մարմաջ՝ մոլեկանս և խորթաբարոյս առնէ զմարդիկ :

# ԿԱՏԱՐԵՑԱՆ
# ՆԿԱՐԱԳԻՐՔ
# ԹԷՈՓՐԱՍՏԵԱՑ

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

Digitized by Google